





ՍԻՐԵԼԻ ԵՐԵԽԱՆԵՐ

Անցավ 1968 թվականը: Ինչպես միշտ, այս տարի ևս եղեք առույգ և կայտառ: Թող ձեր երգն ու ծիծաղը բարձր հնչի ամենուր:

*ՄԱՐՏԻՐՈՍ ՍԱՐՅԱՆ*

# Շ Ն Ո Ր Հ Ա Վ Ո Ր





ՍԻՐԵԼԻ ԵՐԵԽԱՆԵՐ

Յուրաքանչյուր սերնդի կյանքում ամենանվիրական պահը մանկությունն է, որովհետև այն մի անգամ է տրվում մարդուն, անկրկնելի է ու անցնում է ակնթարթի պես...

Իմ սերնդակիցների համար այդ մանկությունը թվաց ավելի երկար, որովհետև անցավ անուրախ և դժվարին պայմաններում, որբանոցներում ու փողոցներում:

Այդ է պատճառը, որ ձեր երջանիկ մանկությունը մեզ առանձին ուրախություն է պատճառում, նամանավանդ, երբ գիտակցում ենք, թե իզուր չենք ապրել ու պայքարել, մեր այսօրվա երջանիկ կյանքի հոյակապ շենքի կառուցմանը բերելով մեր մասնակցությունը:

Որքան էլ երջանիկ լինի մանկությունը, սակայն, աննպատակ ու անհոգ չպետք է անցնի այն: Ապրեցեք արդյունավետ, ձեր հասարակության համար օգտակար կյանքով: Լինեք մանուկ, պատանի թե երիտասարդ, լինեք հասուն տարիքում թե ծերունազարդ, ապրեցեք այնպիսի կյանքով, որ հաճույք պատճառեք ձեզ և ուրիշներին, որպեսզի ձեր մասին գոհունակությամբ ասեն՝ այս մարդը իրավունք ունի ապրելու:

*ՎԱՐԱԶԴԱՏ ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ*

*Ճարտարապետության*
*դոկտոր-պրոֆեսոր,*
*ճարտարապետների*
*միության նախագահ*



### ԹԱՆԿԱԳԻ՜Ն ՊԻՈՆԵՐ՜ՆԵՐ

Նոր տարում ցանկանում եմ ձեզ քաջառողջություն, ցանկանում եմ, որ լավ սովորեք և ավելի կապված լինեք երաժըշտությանը:

Երաժշտությունը պվարճալիք չէ:

Երաժշտությունը մարդկանց դարձնում է ավելի ազնիվ, գեղեցիկ, օգնում է, որ դուք մեր աննման հայրենիքի կառուցման համար պիտանի մարդ դառնաք:

Մոտ եղեք երաժշտությանը:

Շնորհավոր Նոր տարի, սիրելի պիոներներ:

*ԷԴՎԱՐԴ ՄԻՐԶՈՅԱՆ*
*Կոմպոզիտորների միության նախագահ*



### ՍԻՐԵԼԻ ՊԻՈՆԵՐՆԵՐ

Անսահման ուրախությամբ շնորհավորում եմ ձեր Նոր տարին:

Ցանկանում եմ ձեզ բոլոր այն բարիքները, որ ձեզանից յուրաքանչյուրն է երազում:

Ցանկանում եմ, որ ձեզանից յուրաքանչյուրը մեր Երևան մայրաքաղաքի 2800-ամյակին ներկայանա աշխատանքային սխրագործություններով, առողջ, ազնիվ ու երջանիկ:

Ձեր պապն ու բանաստեղծը՝

*ՆԱԻՐԻ ԶԱՐՅԱՆ*

# Ն Ո Ր Տ Ա Ր Ի



### ՄԻՇՏ ԴԵՊԻ ԱՌԱՋ

Ահա ևս մի տարի անցավ մեր կյանքից՝ նորություններով, եռանդագին աշխատանքով, անակնկալներով ու սպասելիքներով հագեցած տարի: Ամեն Նոր տարի տոնական տրամադրության հետ միասին բերում է նաև հաշվեկշիռ կատարելու պահանջ: Եկեք ետ նայենք մի պահ, տեսնենք, թե ինչ ենք արել անցած 1968 թվականին, ինչ ենք թերի թողել: Չէ՞ որ մարդը երբեք գոհ չի լինում արածից և միշտ նոր պահանջներ է առաջադրում իրեն: Մարդկային կյանքը անկանգ ճանապարհ է միշտ դեպի առաջ, բարձունքից բարձունք, հավերժական ձգտում դեպի առավել կատարյալը, դեպի իդեալի իրագործումը:

Ամբողջ սրտով ցանկանում եմ ձեզ, սիրելի պիոներներ, համառ կամք, անկաշկանդ միտք, եռանդ ու ավյուն՝ ձեր իդեալների մարմնավորման մեծ ճանապարհին:

*ՎԱՐՍԻԿ ԽՍԱՅԱՆ*
*Վաստակավոր ուսուցչուհի*

*Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ*



# ՀԵՂԱՓՈԽՈՒԹՅԱՆ

ՄԱՐԳԱՐԻՏԱ ՅԱԽՈՆՏՈՎԱ

Նկ. ԱԼԲԵՐՏ ՅԱՐԱԼՅԱՆԻ

Լենինգրադի կենտրոնում՝ Մարսյան դաշտում, մըշտապես հնչում է «Ինտերնացիոնալը», որպես հավերժական հանդիսավոր մեծարում այն հերոսների, ովքեր իրենց կյանքը նվիրեցին պրոլետարական մեծ հեղափոխությանը: Թանկագին անուններ են փորագրված գրանիտե սալաքարերի վրա՝ Գազա, Վոլոդարսկի: Եվ նըրանց կողքին մի տղայի անուն՝ Կոտյա Մգեբրով: Իրար են փոխարինում քաղաքի՝ հեղափոխության օրրանի պիոներների սերունդները, և Կոտյայի գերեզմանի վրա ամեն գարնան երևում են թարմ ծաղիկներ, որ բերում են նրա նոր հասակակիցները:

Պիտերի առաջին պիոներներից մեկը՝ Կոտյա Մգեբրովը, որդին էր դերասան Մգեբրովի, որը մի քանի տարի առաջ մահացավ Լենինգրադում: Մեծ կյանք ապրած այդ մարդը հպարտանում էր նրանով, որ ինքը հայ է: Թող ուրեմն Հայաստանում իմանան նրա փոքրիկ որդու մասին. Կոտյա Մգեբրովը պետք է բարեկամներ գտնի Հայաստանում:

Սոլովյովը գալիս էր բոլոր դերասաններից ուշ: Բարձրահասակ, անճոռնի՝ հսկայական սապոգներով ու ձեռնոցներով, նա սենյակ էր բերում սառնամանիքի թարմ բույրը և ուրախ, սպիտակատամ մի ժպիտ: Կոտյան կանգնած էր լինում հին, մեծ բազկաթոռի հետեվում և վախենում էր ջնչել. հիմա Սոլովյովը կանհետանա վարագույրից այն կողմ և մի րոպե հետո նրա փոխարեն կհայտնվի հեքիաթային Կոմունարը:



...Նա գնում էր դաշտերը, գործարանները, գետնափորները, և մարդիկ, որոնց ճըզմել էր աղքատությունը, ուղղում էին մեջքները: Նա վերադարձնում էր նրանց ուժը և ջահելությունը:

Հաղթանակում է ազատությունը, և ժողովուրդը ցնծում է իր Կոմունարի հետ միասին:

Փոքրիկ, ոտաբոբիկ տղան նետվում է դեպի պապը.

— Բարձրացրո՛ւ ինձ ձեռքերիդ վրա, ես ուզում եմ տեսնել նրան, ես ուզում եմ մեծանալ և կոմունար դառնալ:

Մարդիկ ետ են գնում, Կոմունարը գրկում է տղայի՛ն՝ նրան իր կարմիր թիկնոցի մեջ առնելով:

Վերջանում է Պյոտր Կոզլովի «Լեգենդ Կոմունարի մասին» երեք գործողությամբ պիեսը: Բայց սևաչյա տըղան կարմիր մետաքսին հպված՝ դեռ երկար մնում է կանգնած և նայում է Կոմունարի դեմքին: Կոմունարը ծիծաղում է, բայց այս անգամ բոլորովին ուրիշ կերպ՝ պարզ և քնքշագին, ձեռքով խճճելով տղայի գանգուր մազերը:

— Դե՛, սիրելի՛ս, հիմա ես ու դու Վասյա Սոլովյով ենք և Կոտյա Մգեբրով:

— Դու այլևս Կոմունար չե՞ս:

— Իհարկե, կոմունար եմ, միայն թե ոչ լեգենդար, այլ կենդանի, ինչպես դու:

Պետրոգրադի Հեղափոխական հերոսական թատրոնի փորձերը մեծ մասամբ տեղի էին ունենում Կոտյայենց տանը: Նրանք մեծ բնակարան ունեին, որը չէր տաքացվում (որտեղի՛ց գտնեին վառելափայտ այն դաժան տարիներին) և այնքան ցուրտ էր լինում, որ թըվում էր, թե ուր որ է հիմա առաստաղից ձյուն կգա. Ընկերները այդ տունը կատակով անվանում էին «սառցե տուն»: Բայց «սառցե տան» դռները միշտ բաց էին, և թատրոնի դերասաններից բացի, այստեղ առանց հըրավերի գալիս էին բանաստեղծներ, բանվորներ, ուսանողներ: Կոտյայի հայրը՝ Ալեքսանդր Աբելովիչ Մգեբրովը և մայրը՝ Վիկտորյա Վլադիմիրովնա Չեկանը, դերասաններ էին: Ինքը՝ Կոտյան, հինգ տարեկանից սկսած մասնակցում էր ներկայացումներին:



Կարմիր Պետրոգրադի վրա էր շարժվում Յուդենիչը, ռազմաճակատը բոլորովին մոտ էր քաղաքին: Փակվեցին թատրոնները: Խայտաբղետ աֆիշների փոխարեն փողոցներում փակցված էին հեղափոխական պլակատներ: Տներում վաղ էին մարում լույսերը: Իսկ փայտե մայթերով քայլում ու քայլում էին նավաստիների, բանակայինների, աշխարհազորայինների ջոկատները:

Հեղափոխական թատրոնի դերասանները ռազմաճակատ մեկնեցին: Առավոտյան Կոտյայի ծնողների ետևից ավտոմեքենա եկավ: Ալեքսանդր Աբելովիչը հրաժեշտ էր տալիս Կոտյայի դայակին, երբ դռների մեջ երևաց Վիկտորյա Վլադիմիրովնան՝ Կոտյայի ձեռքից

# ՊԱՏԱՆԻ ՄԱՐՏԻԿԸ

բռնած: Ալեքսանդր Աբելովիչը չհասցրեց ոչինչ հարցնել:

— Հայրի՛կ, մենք բոլորս միասի՛ն ենք գնում,— գոչեց տղան:

Հայրը լուռ բռնեց տղայի ձեռքը: Երբ ավտոմեքենան շարժվեց, նա ասաց Վիկտորյա Վլադիմիրովնային.

— Հավանաբար սա էր ճիշտը: Եթե մարդուն բախտ է վիճակվել ծնվել հերոսական ժամանակներում, չպետք է քնած մնա, եթե նույնիսկ նա երեխա է:

Դերասանները ելույթ էին ունենում Սիվերսկայայում, Կրասնոյե Սելոյում, հեղափոխական Կրոնշտադտում: Խաղում էին խրճիթներում, դպրոցներում, դատարկված եկեղեցիներում: Հանդիսականները նստում էին ուղղակի գետնին կամ կանգնում էին իրար սեղմված: Իրար էին դիպչում հրացանների կոթերը, ուրախ ծիծաղ էր լսվում: Բայց հազիվ բարձրանում էր վարագույրը, և դահլիճում մի զարմանալի լռություն էր տիրում: Ոչ թե դատարկ, անտարբեր լռություն, այլ՝ մտածող, հասկացող:

Համարյա միշտ բեմադրում էին Կոմունարի մասին լեգենդը: Այս պիեսը մտերմացնում էր դերասաններին և հանդիսականներին: Դահլիճում նստած էին քաղցած, անգրագետ, երջանկության ծարավի մարդիկ, որոնք կռվի էին ելել կարիքի, խավարի ու իրավազրկության դեմ: Իսկ բեմի վրա հուզված դերասաններն են՝ իրենց հանդիսականների զգացմունքներով լեցուն:

Այսպիսի իրավիճակում ինչպե՞ս կարելի էր կամա-



կորություն անել կամ ձանձրացնել մեծերին: Կոտյան աշխատում էր ամեն ինչ անել նրանց հավասար: Երբ մի անգամ ներկայացումը ընդհատվեց հրաձգության պատճառով, և դերասանները, վերցնելով հրացանները, դուրս վազեցին դահլիճից հանդիսականների հետ միասին, Կոտյան կանգնեցրեց մորը.

— Իսկ ե՞ս ինչ անեմ, մի՞թե ինձ չի կարելի ձեզ հետ:

Վիկտորյա Վլադիմիրովնան նայեց որդուն. ասել հիմա նրան, որ նա փոքր է, կնշանակեր մահացու վիրավորել տղային...

— Իսկ ո՞վ կմնա դրոշի մոտ, Կո՛տյա: Պահպանի՛ր դրոշը, մենք շուտով կվերադառնանք:

Կոտյան կանգնած էր զգաստ, ինչպես ժամապահ: Հեռվից լսվում էին ձայներ, կրակոցներ: Իսկ այստեղ՝ դպրոցի դատարկ շենքում լռություն էր: Բայց եթե որևէ մեկը համարձակվի, Կոտյան գիտի, թե ինչ պետք է անել...

Կիսախավարում լսվեց մի խուլ հազոց և փայտե հատակի ճռռոցը: Կոտյան նետվեց դեպի դրոշը և կանգնեց նրա առջև ու ձեռքերը տարածեց:

Խուլ ձայնը խոսեց ամոթահար և սիրալիր.

— Մի՛ վախենա, տղա՛ս, քեզ ձեռք չեմ տա: Լա՛վ վախեցրիր ինձ: Դասալիք եմ ես և այստեղ պատահաբար ընկա:

Թիկնեղ տղամարդը ուղղեց հրացանի փոկը և քայլեց դեպի դուռը, առանց ետ նայելու...

Գուցե այս բոլորը նշանակում է, որ Կոտյան չի ունեցել մանկություն՝ ջերմ ու տաքուկ, խաղերով, հեքիաթներով ու քաղցրավենիքով: Քաղցրավենիքը այն ժամանակ իսկապես հազվագյուտ բան էր, հաճախ ընտիպված էին լինում քնել վերարկուով, թաղիքե կոշիկներով: Հեքիաթներ մայրիկը պատմում էր անվերջ, բայց կարո՞ղ էին դրանք համեմատվել այն մեծ, գեղեցիկ հեքիաթի հետ, որ կատարվում էր նրա շուրջը:

Եվ Կոտյան ձեռքն ընկած թղթի կտորի վրա նկարում էր մեծ, վառ արև և կարմիր ճառագայթներ, որոնք ճեղքում էին երկրի վրա իջած սև ամպերը: Գնում էին նավաստիները՝ առաջ թեքված, քամուն հակառակ, յուրաքանչյուրի կրծքին կարմիր տառերով գրված էր՝ ԼԵՆԻՆ:

Փերիներ և ասպետներ Կոտյան չէր նկարում, հասկանում էր, որ հեքիաթները կարող են իրականանալ և առանց նրանց:

Կոտյան պատմում էր իր հասակակից ընկերներին իրենց ներկայացումների մասին, հերթով տանում էր նրանց թատրոն, փորձերին: Հետո երեխաները այդ պիեսներից մի քանիսը խաղում էին իրենց տան առջևի

հրապարակում: Ամենից շատ սիրում էին այն պիեսը, որը Փարիզի Կոմունայի մասին էր:

...Զինվորները գնդակահարում էին կոմունարների մի ջոկատ: Փոքրիկ տղան, որ մեծերի հետ կռվում էր բարիկադների վրա, խնդրում է բաց թողնել իրեն տուն, միայն կես ժամով: Նա պետք է մորը հանձնի ժամացույցը, որը չի հասցրել վաճառել: Դրանով ընտանիքը կարող է մի շաբաթ ապրել: Սպան ներողամտաբար խփում է նրա ուսին. «Գնա, շատ պե՛տք է քեզ սպանել»: Բայց մի քանի րոպե հետո տղան ետ է վերադառնում՝ ուզում է մեռնել ընկերների հետ: Հրացանները բարձրացված են: «Կրա՛կ»,— հրամայում է սպան:

Եվ հանկարծ տեղի է ունենում մի բան, որ պիեսում չկա: Զինվորներից մեկը՝ Կոլյան հրացանը դեն է նետում և բղավում.

— Ես չե՛մ ուզում կրակել, զզվելի է սպիտակ լինելը, ես էլ եմ ուզում կոմունար լինել:

«Սպիտակները» շփոթված լռում են, նրանց շարքերը լքողների մեջ Կոլյան արդեն վեցերորդն է:

Այդ երեկոյան, երբ Կոտյան տուն էր գնում, ինչ-որ մեկը հետևից կոպիտ բռնեց նրա օձիքը: Նա մի կողմ թռավ և շքամուտքի կիսախավարի մեջ ճանաչեց Կոլյա Տերենտևի մեծ եղբորը:

— Դու քո այդ հանաքները թո՛ղ, Կո՛տկա, թե չէ դաս կտամ...

Քսան տարեկան հաղթահասակ երիտասարդը չէր ժպտում: Նա սպառնում էր լուրջ, ասես իր դիմաց ոչ թե ինը տարեկան տղա էր, այլ մի վտանգավոր թշնա-



մի: Կոտյան հանկարծ զգաց, որ ատում է այդ երիտասարդին և երբեք չի զիջի նրան: Նա խոսեց արագ, շըշուկով.

— Ես քեզանից չեմ վախենում, լսո՞ւմ ես: Եվ Կոլյան այլևս քեզ մոտ չի՛ վերադառնա, նա մե՛րն է:

Վերևում չրխկաց դուռը, և Վիկտորյա Վլադիմիրովնան դուրս եկավ հարթակ.

— Կո՛տյա, ո՞ւմ հետ ես այդտեղ, հարկավոր է համերգի շտապել:

Այդ համերգը տեղի էր ունենում նախամայիսյան միտինգներից հետո, Տավրիկյան պալատում: Ալեքսանդըր Աբելովիչ Մգեբրովը և



Վիկտորյա Վլադիմիրովնա Չեկանը արտասանում էին տարբեր երկրների պրոլետարական պոետների բանաստեղծությունները, որոնք համաշխարհային հեղափոխության կոչ էին անում: Ուոլտ Ուիտմենի «Լուսաբացի դրոշի երգը» բանաստեղծությունը նրանք արտասանում էին երեքով՝ տղայի հետ միասին: Նորից Կոտյան կանգնած էր ալ կտորի առջև, և նորից դեպի դահլիճ էր թռչում նրա զրնգուն ձայնը:

Դահլիճում մի քանի հազար մարդ կար, և քար լռության մեջ լսվում էր նրա հուզված ձայնը: Ահա և վերջացրեց ընթերցումն ու լուռ կանգնած է դրոշի առջև, մոր և հոր կողքին: Դահլիճը լուռ է: Հետո, ասես բոլորի մեջ միանգամից ծնվեց նույն ցանկությունը. մարդիկ կանգնեցին, տարբեր շարքերից ցածրաձայն լսվեց երգի սկիզբը՝ «Ելի՛ր, ում կյանքը անիծել է»: Հետո ձայնակցեց ամբողջ դահլիճը:

Կոտյան երգում էր «Ինտերնացիոնալը» բոլորի հետ միասին, կանգնած կարմիր դրոշի առջև ինչպես ժամապահ: Դա 1922 թվականի ապրիլի 22-ին էր:

Այդ տարի գարունը թափանցիկ էր, կապույտ: Քամին մեղմ շոյում էր ծառերը, և թռչունները երգում էին մի տեսակ հանգիստ: Սովետների հաղթանակած երկիրը պատրաստվում էր նշելու Մայիսի 1-ը:

Հեղափոխական հերոսական թատրոնի դերասանները այդ օրերին աշխատում էին լարված. ամեն օր համերգներ, ներկայացումներ, փորձեր: Միայն ապրիլի 22-ին փորձ չկար: Կոտյան առավոտից խաղում էր բակում, հետո գարնան օդից կարմրած, վազեց տուն.

— Մայրի՛կ, մի տղա հիվանդացել է, նրան պետք է հաց տանել: Դա մոտիկ է, այստեղից տըրամվայի երկու կանգառ:

Ինչո՞ւ այդ հանդարտիկ առավոտյան այդպես անհանգստացավ Կոտյայի մայրը: Չէ՞ որ նա որդուն մենակ թողեց դատարկ խրճիթում այն ժամանակ, երբ կըռիվ էր...

— Լավ, Կո՛տյա: Միայն թե միասին կգնանք:

— Մայրի՛կ, մի՞թե հարկ կա, ես ընկերներիս հետ եմ:

Վիկտորյա Վլադիմիրովնան շիկնեց: Հացի բոքոնը փաթաթելով, մեկնեց տղային և հետևից ձայնեց.

— Շո՛ւտ վերադարձիր:

Հետո նա նայեց պատուհանից. մի քանի տղաներ

արագ գնում էին դեպի տրամվայը: Ինչ-որ բանի մասին վիճում էին, ծիծաղում: Վիկտորյա Վլադիմիրովնան իջեցրեց վարագույրը: Վերջին րոպեին նա տեսավ Տերենտևայի ավագ որդուն. նա դուրս էր գալիս տանից:

Անցավ երկու ժամ: Արդեն ժամանակն էր, որ Կոտյան տուն վերադառնար... Ահա և զանգը: Կարճ, արագ:

Դռան ետևում Վիկտորյա Վլադիմիրովնան տեսավ Կոտյայի ընկերներին և մի անծանոթ տղամարդու.

— Դո՞ւք եք քաղաքացուհի Չեկանը: Ինչ-որ մի սրիկա ձեր տղային տրամվայից ցած հրեց: Տղային հենց նոր հասցրին հիվանդանոց: Հանցագործին բռնել չհաջողվեց, նրա դեմքը ոչ մեկը չկարողացավ հիշել:

Վիկտորյա Վլադիմիրովնան նետվեց զանգահարելու Տերենտևներին. նրանց ավագ որդին հենց նոր վերադարձավ տուն:

Ապրիլի 24-ին Կոտյան մահացավ: Նրան տուն բերեցին: Թվում էր ամբողջ քաղաքն էր գալիս հրաժեշտ տալու: Գալիս էին կարմիրբանակայինները, որ ճանաչում էին Կոտյային ճակատային ներկայացումներից, բեմի ավագ ընկերները, որոնք դեռ երեկ նրան մեծ արտիստի ապագա էին գուշակում, նրա հասակակիցները:

Դագաղը ծածկված էր կարմիր մետաքսով, այն նույն դրոշակով, որի առջև կանգնած նա չորս օր առաջ ելույթ էր ունենում Տավրիկյան պալատում: Դրոշակն ուղարկել էր Պետրոգրադի կուսակցական կազմակերպությունը:

Կոտյային թաղեցին ապրիլի 26-ին: Այնքան ժողովուրդ կար, այնքան ծաղիկ ու դրոշակ, ասես ոչ թե թաղում էր, այլ՝ շքերթ: Բոլորը գնում էին ոչ թե գերեզմանատուն, այլ ուղիղ քաղաքի կենտրոնը՝ Մարսյան դաշտը, այնտեղ, ուր պառկած էին մարդիկ, որոնք անմահության իրավունք էին ստացել՝ հեղափոխության և քաղաքացիական կռիվների հերոսները: Կոտյային թաղեցին նրանց կողքին. այդպես էր որոշել կոմերիտմիությունը:

Գրանիտյա փոքրիկ սալաքարի վրա փորագրեցին՝
Կոտյա Մգեբրով-Չեկան,
պատանի դերասան-ագիտատոր
(1913—1922)

Մինչև այսօր էլ մանուկները և մեծահասակները ծաղիկներ են բերում Կոտյայի գերեզմանին, թեև անցել է ավելի քան քառասուն տարի: Քառասուն տարի... Կոտյան հիմա կարող էր լինել ճանաչված դերասան: Կամ բանաստեղծ, նա շատ վաղ սկսեց բանաստեղծություններ հորինել: Կամ գուցե նկարիչ...

Բայց մի՞թե նրա այդքան կարճ կյանքը գեղեցիկ չեղավ:

Թարգմ. Լ. ԳԵՎՈՐԳՅԱՆԻ



# ԶՐՈՒՅՑ ԻԼՅԻՉԻ ՀԵՏ

ՆԱՆՍԵՆ ՄԻՔԱՅԵԼՅԱՆ

— Ողջու՜յն քեզ, Իլյի՛չ,—շշնջում եմ ես
Ու քո անունն եմ սրտով փայփայում։
Բայց նկատում եմ, որ քո աչքերից
Ինձ հազարավոր աչքեր են նայում,
Եվ քո ձեռքերից ձեռքեր են հառնում,
Եվ քո մտքերից հառնում են մտքեր,
Եվ քո լույսերը խարույկ են դառնում,
Աշտարակներ են դառնում երկնաքեր։
Դու բարձրանում ես, դառնում վիթխարի,
Հայացքդ մարդուն, աշխարհին պահած,
Արեգակի պես ժպտում ես հողին՝
Սառցե բյուրավոր՝ պատնեշներ հալած։
Ու շշնջում եմ նորից իմ հեռվից.
— Ողջու՜յն քեզ, ողջու՜յն, Իլյի՛չ հարազատ,
Ես ամենուրեք հանդիպում եմ քեզ.
Դաշտերի գրկում մեր արևազարդ,
Ու լապտերների ծովում ժպտացող,
Եվ մանուկների ծիծաղում անհոգ,
Սավառնակներում երկինք սլացող
Եվ հրթիռներում արբանյակ տանող։
Մեր բոլոր, բոլոր հրաշքների հետ
Դու ամեն անգամ ելնում ես իմ դեմ,
Ժպիտն արևի քո ժպիտի հետ
Ես սկսում եմ շփոթել արդեն։
Դու մեր գիշերվա երազում անգամ
Անքուն, անդադար քայլում ես մեզ հետ,
Ես քեզ մոտիկից ամեն օր տեսնում
Եվ հեռվից-հեռու խոսում եմ քեզ հետ։




ՇԱՀԵՆ ԹԱԹԻԿՅԱՆ

Միջնապատի պատուհանից խոսակցության աշխույժ ձայներ լսվեցին:

Լսվում էին թիթեղյա ամանների ձայներ, վավվրկուք, կցկտուր բացականչություններ: Հետո մեկի տիրական ձայնն ասաց.

— Շտաբից հարցում արին: Թե վեցն էլ ապահով իրենց տեղերո՞ւմն են: Ես պատասխանեցի, որ ոչ միայն վեցը տեղումն են, այլև դարձել են յոթ... Ոչինչ չհասկացան: Հետո կապը կտրվեց:

Բանտարկյալները ուշադրությամբ լսում էին:

— Կիմանաք դրա անուն-ազգանունը և ցուցակում կավելացնեք... Ինչ-որ կատաղածի մեկն է երևում... ֆանատի՞կ է, ինչ է...

Քիչ անց նույն պատուհանից մեկը ձայն տվեց.

— Հե՜յ, թող մեկը մոտենա ապրանքը ստանա:

Դրսից փականքը ետ գնաց և դուռը կիսաբաց եղավ:

*Սկիզբը՝ 1968 թ. «Պիոներ» №№ 11, 12*



Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

Չերբակալվածներից մեկը մոտեցավ ու ինչ-որ փաթեթներ ընդունեց:

— Հիմա ամեն ինչ թանկ է ու փողը ոչինչ չարժե,— ասացին դռան այն կողմից:— Սա է, ինչ-որ հնարավոր եղավ ձեռք բերել:

Չերբակալվածը բան չասաց: Նա գիրկն առավ փաթեթները, հետո դրեց հատակին, ուր քիչ առաջ հացն էր դրված, որից հիմա մի քանի փշրանք էր մնացել:

Տղան աչքերը լայն բաց արած նայում էր: Այստեղ խոզի ճարպի մի կտոր կար, խաշած միս, հաց, ձվեր:

Կալանավորներից մեկը վերցրեց մի մեծ կտոր հաց, վրան դրեց ճարպ, միս, մեկնեց տղային: Հետո նրան տվեց մի հատ ձու:

— Իսկ աղը այստեղ է,— ասաց նա, ցույց տալով շորի վրա դրված թղթի փոքրիկ փաթեթը,— վերցրու ի՛նքդ:

Այդ ամենը խիստ անբնական ու տարօրինակ էր: Կիսախավար այդ վագոնը տանում էր տղային չգիտես, թե ուր, չգիտես, թե ի՛նչ մարդկանց հետ, ու նա այստեղ, հատակին նստած ուտում էր բաներ, որոնց մասին երազել անգամ չէր համարձակվի:

Հետո նորից քունը սկսեց տանել: Նա հարմար պառկեց, կենդանական մի երանավետ գրգիռ զգալով ամբողջ մարմնում, ու պիտի քներ, երբ նորից կռունկից քիչ վեր զգաց կլորավուն առարկայի հպումը: Նա դժվարությամբ գրպանից հանեց նարինջը: Նրա ուղեկիցները, որ նորից սկսել էին խոսակցությունը, լռեցին ու հետաքրքրությամբ նայեցին: Տղան նրանցից ամենամոտիկին մեկնեց նարինջը:

— Սա ի՞նչ է, նարի՞նջ է, ի՛նքդ կեր:

Տղան համառորեն մեկնեց:

— Դո՛ւք կերեք, ես կերել եմ...

Վաղուց նա այդքան բարդ միտք չէր արտահայտել:

Մարդը համառորեն վանեց նրա պարզած ձեռքը.

— Չէ՛, չէ՛, դո՛ւ կեր:

Տղան տատանվեց: Նա մեկ ուզեց նորից գրպանը դնել նարինջը, բայց կարմանալիորեն նրա միտքը պարզվել էր: Նա կեղևեց պտուղը ու մասերի բաժանեց: Ստացվեց վեց շերտիկ: Նա շորի կտորի վրա, ամեն մեկի առաջ դրեց մի շերտիկ:

Չերբակալվածները ուշադրությամբ նայում էին:

— Գողացած մրգով ենք հյուրասիրվում,—ասաց մեկը:

— Ես սա վերցրել եմ,—տանջանքով ասաց տղան:

— Նա վերցրել է, ոչ թե գողացել։ Վերցրո՛ւ,— ասաց մեկ ուրիշը և վերցրեց իր առջև դրված շերտիկը։

Մյուսներն էլ վերցրին։

— Քեզ բան չմնաց,— ասաց տղայի կողքինը։

— Մնաց,— ասաց տղան, բռան մեջ սեղմելով նարնջի կեղևները։

Ու բոլորը կերան մի-մի շերտ նարինջ։ Տղան մի քիչ կեղև կերավ։ Նա սովոր էր այդ կեղևների դառնահամին և կարող էր բոլորը ուտել, բայց մի մասը միայն կերավ։ Մնացածը դնելով գրպանը, նա ասաց.

— Սրանցից լավ հոտ է գալիս. ես պահում եմ սըրանք...

— Լսի՛ր,— ասաց մեկը,— դու բուրժուական ճաշակ ունես, նրբահամ բաներ ես սիրում... Դու նարինջ շա՞տ ես սիրում։

Բոլորը ծիծաղեցին ու այդ ծիծաղի մեջ վիրավորական բան չկար։ Տղան չծիծաղեց, որովհետև նա վաղուց չգիտեր, թե ինչպես են ծիծաղում։ Գնացքը շարժվում էր, և անիվների համաչափ թխկթխկոցի հետ, խաղաղ կրույցի ձայների ներքո, տղան քնում էր։

— Ա՛յ, դու քիչ առաջ ասում էիր գողացված, բայց տղան լավ ասաց, թե վերցրել է։ Նա ոչ մի գաղափար չունի հեղափոխության ու դասակարգային պայքարի մասին, բայց ՝գիտե, թե ինչ է նշանակում վերցնել։ Մենք, որ գիտակցական բարձր մակարդակի վրա ենք կանգնած, վերցնում ենք իշխանությունը։ Ինչքան կան սրա նմանները, որոնք նարինջ են վերցնում։

— Դու օբյեկտիվորեն կարող ես հանգել գողությունն արդարացնելուն։

— Ո՛չ, ես մտածում եմ, որ գողության համար պետք է առաջին հերթին դատապարտել նրանց, ովքեր ստեղծում են այս սոցիալական անհավասարությունը, ովքեր աշխարհը բաժանել են կուշտերի ու քաղցածների, ովքեր այդ քաղցածների բաժինը խժռելով... Լսի՛ր, սա դեմագոգիա է, ճիշտ է, բայց դու չե՞ս գտնում, որ գուցե տղան վերցրել է հենց այն նարինջը որը իրենն էր լինելու...



— Քեֆս բերում ես... Եթե մեկ դատապարտեն և օրինավոր դատ լինի, պատկերացնում եմ, թե ինչպես ես խոսելու...

— Ես կսկսեմ հենց այս նարնջից...

Տղան քնում էր։

Քնի մեջ նա տեսավ այն գեղեցիկ կնոջը, որն իրեն մի ժամանակ ուտելիքի մնացորդներ էր տալիս ու հետևից գալիս էր մինչև բանտ։

Կինը կատաղած խփում էր տղային ու գոչում.

— Դու նարինջը գողացե՛լ ես, դու գողացե՛լ ես նարինջը...

Տղան ցավ չէր զգում, բայց վախենում էր և այդ միջոցին հիշեց, որ ինքը կարողանում է օդում թռչել ու մի շարժում արավ։ Նա թեթևությամբ օդ բարձրացավ։ Ցածում կանաչ մարգագետիններ էին, ուր շատ ոչխարներ էին արածում, և տղան օդում սավառնելով ու նայելով ցած, մտածում էր.

— Որտե՞ղ է մեր ոչխարը...

Նա փնտրում էր իրենց ոչխարը և այդ հաճելի թե-

# ԱՌԱՋԻՆ ՁՅՈՒՆԸ

*ՎԱՀԱԳՆ ԿԱՐԵՆՑ*

Առաջին ձյունը
Մաղվում է բարակ.
Տան կտուրներին.
Ճամփեքի վրա։
Թափվում է այգու
Նստարաններին.
Լճերի վրա
Ու կամուրջների։
Իսկ ես շրջում եմ
Առաջին ձյան տակ
Ու ինձ կանչում են
Գարունները տաք։

Կգա Նոր տարին
Առաջին ձյան հետ
Եվ որքա՜ն բարիք
Կբերի իր հետ։
Կբերի Նոր երգ.
Նոր տուն. Նոր ճամփա,
Եվ ճամփաներին
Սիրտս կծփա։
Որքա՜ն բարձունքներ
Մենք կնվաճենք
Եվ որքա՜ն Նոր բան
Մենք կճանաչենք։

Կիմանանք գաղտնիքն
Հեռու աստղերի.
Կբանանք ընդերքն
Հարուստ լեռների։
Իսկ հիմա ձյունը
Իջնում է բարակ.
Իջնում լեռների.
Դաշտերի վրա։
Իջնում է ճերմակ
Մի խաղաղություն.
Բարի Նոր տարի
Ու Նոր խնդություն...



թնություն էր պատճառում նրան, նա ուզում էր երգել:

Այդ միջոցին նա ինչ-որ սխալ մի շարժում կատարեց և քիչ մնաց վայր ընկներ, նա բղավեց ու կարթնեց:

— Շա՛ն ձագ, վե՛ր կաց... Հլա տե՛ս, աղեն սովոր չի այս ժամին կարթնել:

Ոչինչ չհասկանալով՝ տղան վեր թռավ: Վագոնում միայն ինքն էր մնացել: Նրան քարշ տվեցին դուրս և այստեղ, մթության ու սառնության մեջ նրա գիտակցությունը պարզվեց, ու նա սկսեց հաղորդակից դառնալ աշխարհին, ավելի ռեալ ընկալել ամեն ինչ:

Վագոնի ընկերները արդեն ցածում էին ու կանգնած էին փինվորներով շրջապատված: Հեռվից կրակոցների ձայն էր գալիս:

— Արա՛գ, արա՛գ,— լսվեց սպայի հրամայական ձայնը:

Նրանք արագ քայլեցին:

— Գոնե մի քիչ էլ գնայինք գնացքով, փնթփնթաց մեկը: Ես չոլի մեջ, ո՞ւր գնանք: Այն կողմը՝ կրակոց, այս կողմը... դենն էլ՝ գիծը կտրված...

— Լուսադեմին ամեն ինչ կերևա,—ասաց սպան:— Համբերենք...

... Հեռվից, մթության մեջ ուրվագծվեց մի մարդու կերպարանք:

Սպայի հրամանով խումբը կանգ առավ:

Սպան ընդառաջ գնաց դիմացից եկողին:

Նրանք մի որոշ ժամանակ կիսաձայն խոսում էին: Կցկտուր բառեր էին հասնում նրանց խոսքերից:

— Լավ, հիմա ո՞ւր գնանք,— չարացած ձայնը բարձրացրեց սպան,— չորս կողմից կրակի մեջ... Գոնե այս բեռը մեր վզին չլիներ...

— Ես կարծում եմ,— ասաց դիմացինը...

Նրա հետագա ասածները չլսվեցին, որովհետև նա շատ ցածրացրեց ձայնը:

— Ինչպե՞ս կարելի է,— առարկեց սպան:

— Ուրիշ ելք չկա,— ասաց մարդը:— Մենք պետք է շտապենք...

Կիսաշշուկով արված խորհրդակցությունը մի փոքր էլ շարունակվեց, որից հետո սպան վերադառնալով, կարգադրեց շարժվել...

— Դեպի ո՞ւր ենք գնում,— հարցրեց ձերբակալվածներից մեկը:— Մեզ տանում եք դեպի ավազուտների խո՞րքը...

— Լռե՛լ,— ճչաց սպան:

Գծի վրա հոգնած փնչում էր շոգեքարշը, ու տղան նկատեց, որ հիմա նրան կցված էր միայն մեկ վագոն, այն վագոնը, որով եկել էին իրենք: Շոգեքարշի տեսքը տղային ինչ-որ հանգստություն էր ներշնչում, բայց նրանց տանում էին հեռու, դեպի ամայի մի մթություն, որը ընկերներից մեկը քիչ առաջ անվանեց «ավազուտներ»... Այդ մթությունը անհասկանալի վախով էր լցնում նրանց սիրտը:

— Լսեցե՛ք,— հանկարծ ասաց ձերբակալվածներից մեկը:— Մենք հիմար չենք ու հասկանում ենք, թե ուր եք մեզ տանում: Բայց մեզ հետ վուր եք այս տղային... ախր, նա բոլորովին կապ չունի...

Սպան կանգ առավ:

Խումբը նույնպես կանգ առավ:

— Դու ո՞վ ես, քեզ ինչո՞ւ վերցրին սրանց հետ,— հարցրեց սպան:

Զինվորներից մեկը հիշեցրեց.

— Միասին չլերցրին, պարո՛ն սպա: Սրան ինչ-որ բանի համար բռնել էին կայարանում...

Հիմա բոլորը նայում էին տղային:

Թույլ քամի էր փչում, որը հետզհետե ուժեղանում էր: Մարդիկ սկսել էին դժվարությամբ իրար հասկանալ, որովհետև քամին խլում էր մարդկանց բերաններից ելած ամեն մի հնչյուն ու նետում այս ու այն կողմ:

—Դու սրանցից չե՞ս,—հարցրեց սպան:—Ո՞վ ես:

Ու տղան նայեց կողքիններին:

— Դու լեզու ունե՞ս, թե՞ չէ,— նորից հարցրեց սպան:

— Ես սրանցից եմ...— ասաց տղան ու ձերբակալվածներից մեկը վայրացած բղավեց նրա վրա:

— Դու հասկանո՞ւմ ես, մեզ տանում են գնդակահարելու: Մեզ տանում են գնդակահարելու, որովհետև իրենք փախչելու, գլուխներն ազատելու ճանապարհ չունեն, դու մեզ հետ վուր ես... Որովհետև...

— Գնա՛ դեպի շոգեքարշը,— կարճ կտրեց սպան:

Տղան չշարժվեց տեղից: Իրենց շոգեքարշից արդեն բաժանում էր մի ահագին մթություն, ու տղան պատկերացրեց, որ ինքն առանց ընկերների մեն-մենակ պետք է քայլի այդ մթության միջով:

— Գնա՛... Դե... մա՛րշ, —նորից հրամայեց սպան:

— Չէ,—ասաց տղան:

— Ի՞նչ,— գոռաց սպան:

— Ես սրանց հետ եմ, —դողահար ասաց տղան:



— Լռի՛ր,— ասաց ձերբակալվածներից մեկը:— Տղա՛, մեզ գնդակահարելու են:

Տղան չշարժվեց տեղից:

— Սենտիմենտալությունների ժամանակ չկա,— ավելի բարձր գոռաց սպան:— Գնացինք, մա՛րշ...

Նրանց տարան այնքան հեռու, որ շոգեքարշի փնչոցներն արդեն չէին լսվում: Այստեղ խոր ավազ էր, ու մարդիկ հազիվ էին քայլերը փոխում:



Նրանց շարեցին կողք-կողքի:

Գնդակահարողները վեց հոգի էին, իսկ դատապարտվածները՝ յոթ:

Դատապարտվածները սկսեցին երգել.

Ելի՛ր, ում կյանքը...

Տղան չգիտեր այդ երգը և ընդհանրապես ոչ մի երգ չգիտեր: Նա ուսով կպել էր ամենից ավելի մոտիկ կանգնածին ու դողում էր, ու սա նրան ասաց.

— Դու մի կո՛ղմ փախի, քեզ բան չեն անի:

Բայց տղան ավելի քիպ կպավ նրան:

Սպան հրահանգեց.

— Պատրաստվե՜լ...

Գնդակահարվողները յոթ հոգի էին, իսկ գնդակահարողները՝ վեց:

Դատապարտվածներից մեկը բղավեց.

— Կեցցե՛ հեղափոխությունը...

— Կեցցե՛ Լենինը,— գոչեց մեկ ուրիշը, իսկ երրորդը բղավեց.

— Իժե՛ր, միևնույն է, ձեր վերջը եկել է, դուք վախից... Տղա՛, դու փախիր...

— Կրա՛կ,— գոչեց սպան:

Հրացանները ճայթեցին: Վեցից հինգը ընկան: Վեցից միայն մեկը տեղում երերում էր և ընկնելուց առաջ նորից բղավեց.

— Իժե՜ր...

Տղան անվնաս էր մնացել, և խելագար սոսկումով նայում էր, թե ինչպես են արյան ու ավազի մեջ թավալվում իր ընկերները:

— Դե, դու փախի՛ր,— գոռաց սպան, ատրճանակը պատյանը դնելով:

Ու հանկարծ տղան բռունցքները մեկնեց ու...

Տղան հայհոյել չգիտեր, բայց քաղաքում շատ էր հայհոյանք լսել: Նա կյանքում երբեք չէր հայհոյել, բայց նա բռունցքները մեկնեց ու կյանքում առաջին անգամ, ամենաիսկական հայհոյանք տվեց: Նա պարզապես հուսահատ ճչաց.

— Կորե՛ք, ես ձեր...

Սպան նորից պատյանից հանեց ատրճանակը, երկու քայլ առաջ եկավ:

Տղան արդեն խելագարվում էր և ավելի բարձր, հուսահատ բղավեց.

— Ես ձեր...

Քամին արդեն շատ էր սաստկացել: Հեռվում սկըսել էր արևելքը շառագունել:

Սպան այս անգամ երևի չլսեց տղայի խոսքերը, որովհետև քամին շատ էր սաստկացել, բայց նա տեսավ տղայի ցավից, կատաղությունից, ծամածռված խելագար դեմքն ու կրակեց: Նա կրակեց մի անգամ, երկու, երեք, չորս անգամ: Մինչև որ ատրճանակի լիցքը դատարկվեց:

*

*   *

Հետո խումբը շրջվեց ու հեռացավ հետվհետե արագացող քայլերով:

Համարյա փախչում էին, իսկ քամին արդեն մոլեգնում էր: Քամին շերտ-շերտ ավազ էր բերում ու լցնում ընկածների դեռ տաք մարմինների վրա:

Քամին ջտապում էր ծածկել երկրի ամոթը...



# ԱՐՏԱՇԵՍԻ ՀԵՔԻԱԹԸ

ՎԱԶԳԵՆ ՏԱԼՅԱՆ



Լսեք պատմեմ, թե մի մանչուկ,
Անունն՝ Արտաշես,
Ինչու՛ տխրեց, հետո ինչու՛
Պարեց խենթի պես...

Կարդացել էր հեքիաթ մի հին,
Որ ուստա կատուն
Ծնն է լինում ժամանակին
Ու շանը խաբում:

Հազիվ ճարած մորթին առնում,
Որ գդակ կարի,
Գլխաբաց է ցրտին թողնում
Քուչիին բարի...

Արտաշեսը այս որ կարդաց,
Այնպես բարկացավ,
Որ գիրքն առավ և աչքը թաց՝
Մորը մոտեցավ

Սոմիկը պառկել էր հողե տան կտրին գցված անկողնու վրա՝ հայացքով դեպի աստղերը: Ծաղկողի վառ երևակայությամբ պատանին թափանցել էր աստղանախշ երկնքի ոլորտները: Թվում էր, եթե անզգուշորեն շարժի ձեռքը, կարող է խառնել, խռովել աստղերի գիշերային խաղը:

Վարդպետ Մխիթարի փոքրիկ պարտեզի ծայրից հովը մի անուշ մեղեդի առած, եկել լցվել




ԿԱՐԼԵՆ ԳԵՎՈՐԳՅԱՆ

էր լռության մեջ: Ինչ-որ անմեկնելի, հոգին վեհացնող անդորրություն էր պարուրել նրան: Պատճառը գյուղական ամառային թափանցիկ գիշե՞րն էր, թե՝ ամառերգող Եղեգնիկ թռչնիկը, կամ գուցե ա՞յն, որ նա իր առաջին գիշերն էր վայելում վանքից հեռու, ուր ձիթաճրագի աղոտ լույսի տակ. այժմ էլ մեջքը կրած՝ մագաղաթներ է ծաղկում հայր Ծառուկը:

Սոմիկի աչքի առաջից չէր հեռանում ծեր ծաղկողի չորացած, ամբած, բայց անչափ բարի դեմքը: Ու ինքնամոռացությամբ տղան խոսում էր նրա հետ.

— Ների՛ր, հա՛յր Ծառուկ... Ես ենթարկվեցի սրտիս ձայնին. ինձ կանչում, գերում են հայրենի քարերը: Ուզում եմ, որ ծաղկեն ոչ միայն մագաղաթները, այլև քարերն հայոց...

Գիշերը խորանում էր, ամփոփվում ինքն իր մեջ, կարծես նա էլ խորհում էր խորհուրդ մի խորին, որ պետք է լուսաբացին իմաստություն դառնար, լցվեր ամեն մի շյուղ ու թփի մեջ: Սոմիկը, որն իր կյանքի տասնհինգ գարունների կեսն ապրել էր վանքում, ապրել ինչպես մի շարական, այժմ առաջին անգամ աշխարհ էր իջել ու պետք է ապրեր որպես աշխարհիկ մի քար, մի ծաղիկ կամ առվակ, որն իր մի պուտ ջրում կարող է արտացոլել մի ողջ արև: Նա Ծառուկից սովորել էր մագաղաթներ ծաղկել, նախշեր անել ու տառեր գրել: Սովորել էր ճանաչել գույները և նրանց դարձնել անխամրելի: Բայց մի օր ինքն իր մտքից սոսկացել էր, որ այն ամենը գեղեցիկը, ինչ գրիչների ու ծաղկողների բազում սերունդներ ըստեղծում են տքնությամբ, կարող է հանկարծ

Ասաց.— Վա՛տն է կատուն, մայրի՛կ,
Խաբեբա է, չէ՞:
— Այո՛, վատն է, իմ լա՜վ բալիկ,
Վատն է, բա ի՞նչ է...

* * *

Օրը մթնեց: Փոքրիկն ելավ
Մտավ անկողին:
Ու գիշերը երազ տեսավ,
Տեսավ խաբողին...

Ձմեռ է ցուրտ, չորս կողմը՝ ձյուն:
Շունը՝ գլխաբաց:
Ցանկապատին ելած կատուն,
Ահա թռավ ցած:

Վագր դարձավ կատուն հանկարծ,
Շան դունչը չանգռեց,
Արյունոտեց գլուխը բաց...
Քուչին կաղկանձեց:



Տղան լացեց, տղան կոծեց՝
Եվ երազում խոր...
Ոչ ոք չեկավ, ոչ ոք չօգնեց
Շանը վիրավոր:

Մեկ էլ հանկարծ հրաշք եղավ...
Քույրը տղայի,
Առյուծ դարձած՝ վրա պրծավ
Վագրին ամեհի...

Առավոտ շուտ տղան ուրախ
Մորն ասաց.— Հապա՜...
Տեսա՞ր, հաղթեց քույրըս անվախ՝
Կատվին խաբեբա:

Հետո պատմեց երազն իր այդ
Պարզ հեքիաթի պես...
Երա՞զ է սա, թե՞ մի հեքիաթ,
Հերոսն՝ Արտաշես:

Նկ. ՀՐԱՉՅԱ ԽՈՒԴԱՎԵՐԴՅԱՆԻ

*թշնամու ձեռքով այրվել ու մոխրանալ: Ափսոսացել էր մահացող գրքերի համար ու մտքում ծնունդ էր առել հայկական գեղեցիկ զարդանկարները քարի վրա փոխադրելու գաղափարը:*

*— Հա՛յր Ծառուկ,— ասել էր հրաժեշտի պահին,— թե այրեն ձեռագրերն հայոց, կապրեն քարերը... Ուզում եմ սովորել կառուցելու և քանդակելու արվեստը:*

*— Է՜հ, որդի՛ս,— պատասխանել էր ծերունին,— գիրը սուրբ է, գիրքը կայրեն, բայց գիրը կմնա...*

*«...Գիրքը կայրեն, բայց գիրը կմնա...» Ծաղկողի խոսքերը բյուր արձագանքներով այժմ հնչում էր Մոմիկի գլխում, ինչպես պատարագի կանչող զանգակատան ղողանջ: Իսկ գիշերն արդեն կես էր եղել և շուտով արևելքում կերևար Փայլածուն: Լուսաբացին արևը նոր լույսով պետք է լուսավորեր Մոմիկի վարդապետի օրը:*

* * *

*Եղեգնիկը, քարի վրա գույնզգույն ծաղիկներ փռած, հիանում էր նրանց նուրբ թերթիկներով: Վարդապետ Մխիթարը գողթան մի տաղ գեղեցիկ մր-*



*մռալով քթի տակ, ռիթմով, փայլուն թակիչով հարվածում էր բարալիկ հատիչին: Խաչքարի վրա մեկը մյուսից գողտրիկ նախշեր էին հյուսվում:*

*— Ի՞նչ նախշեր են, է՜,— հիանում էր Մոմիկը,— կարծես ասեղնագործ դիպակ են փռել քարին, վարդապե՛տ:*

*Ճարտարապետը ժպտում էր:*

*— Դու սրանից լավերը կքանդակես, Մոմիկ,— ստեղծագործողի արժանապատվությամբ խոսեց Մխիթարը:— Քո ձեռքն ավելի զգայուն է, ճարտար, ու սիրտդ էլ սիրով է լցված: Այս ասելիս ծեր քանդակողը նայեց Եղեգնիկին, որն արդեն տասնչորս*

*տարեկան էր և եղնիկի իրան ուներ:*

*— Հենց ձյունը նստի, մեծ ուղևորություն եմ սարքելու... Իշխանը խաչքարի համար թանկ նվեր է խոստացել:*

*— Ի՞նչ նվեր, պա՛պ,— հարցրեց Եղեգնիկը աղջկա պարզամտությամբ:*

*— Որտեղի՞ց իմանամ: Երևի ոսկե ապարանջան կամ արծաթե գոտի... Դե, իշխան է, հո ռամիկ չի՞. իշխանի նվերն էլ իշխանավայել կլինի...*

*Մոմիկը կռահելով վարդապետի միտքը, կարմրել էր սարի կակաչի նման:*

*Վարդապետ Մխիթարը վերջին նախշերն էլ շտկեց, մաքրեց փոշուց, փչեց, շոյեց ձեռքի կոշտ ափով ու ելավ տեղից: Գործն ավարտած մարդու հպարտությամբ, խաչքարը վերից-վար չափեց հայացքով, հեռու գնաց, մոտ եկավ, նայեց ամեն կողմից, էլի ինչ-որ մանրուքներ հղկեց ու ինչպես վերջալույսի արև փայլեց իր բրոնզյա դեմքով...*

* * *

*...Եղեգնիկին տարան լուսաբացին: Տարան սովորական ձևով, ինչպես հարկահավաքը կարող է վերցնել ու տանել իրեն դուր եկած մի գառ կամ մի տիկ գինի: Իշխանի ձիավորները նրան գցեցին ձիու թարքն ու տարան:*

*— Իշխանի կամքն է,— ասացին ու էլ ոչինչ:*

*Աղջիկն աղիողորմ լալիս էր ու կանչում՝ «Մոմի՜կ, Մոմի՜կ»:*

*Բայց ի՞նչ աներ Մոմիկը. անխիղճներն այնպես էին նրան կապել ծառից, որ ծառն էլ տեղահան աներ, դարձյալ անզոր էր իշխանի կամքի առաջ: «Ինչ իշխանի հողումն է, իշխանինն է...»*

*— Բա խաչքա՞րը, բա իմ քրտի՞նքը, հավա՜տքս,— սառած շուրթերով աղերսում էր ալեհեր ճարտարագործը: — Չէ, սխալմունք կլինի: Կգնամ իշխանի ոտքը, հազար նոր խաչքար կխոստանամ...*

*...Բայց ծերն այնպես էլ իշխանի տեսակցությանը չարժանացավ...*

*...Եղեգնիկին ոսկյա ու արծաթյա իրերի հետ ընծա ուղարկեցին Պարսկաստան:*

Նկ. ՎԱԶԷՆ ԹԵՎԱՆՅԱՆԻ



# Շուշիկը

ԳՈՀԱՐ ՖԻԼՈՅԱՆ

— Երեխանե՛ր, ո՞վ է կարդացել Թիմուրի և նրա ընկերների մասին, թող ձեռք բարձրացնի,— ասաց հինգերորդ «ա» դասարանի դասղեկ ընկեր Արմիկը:

Բոլորը բարձրացրին ձեռքները:

— Ուրեմն բոլորդ կարդացել եք: Դա շատ լավ է: Իսկ ի՞նչն է ավելի շատ դուր եկել ձեզ:



— Որ Թիմուրը և իր խմբի տղաները եղել են շատ համարձակ:

— Որ նրանք եղել են անվախ:

— Էլ ուրիշ ի՞նչ:

— Երևի նրանք եղել են շատ բարի,— ասաց Շուշիկը:

Բոլորը ծիծաղեցին: Միշտ այդպես էր լինում. բավական էր, որ Շուշիկը մի բառ ասեր, բոլորն սկսում էին ծիծաղել:

— Ինչո՞ւ եք ծիծաղում,— լռեցրեց երեխաներին ընկեր Արմիկը:— Շուշիկը ճիշտ ասաց: Չէ՞ որ իրենք թիմուրականները շատ բարի են եղել: Իսկ ի՞նչ բարի գործեր են կատարել, հիշո՞ւմ եք, երեխանե՛ր:

— Նրանք օգնում էին ծերերին, հիվանդներին,— շտապ ասաց Արևիկը:

— Ձեզ այդ մասին էի հարցնում: Հիշո՞ւմ եք, թե ինչպես են թիմուրականները օգնում ծերերին:

— Հիշո՜ւմ ենք,— բացականչեցին երեխաները:

— Իսկ ինչո՞ւ դուք էլ չլինեք թիմուրականների նման: Ձեզ տալիս եմ երկու շաբաթ ժամանակ: Երկու շաբաթից հետո կպատմեք, թե ինչ բարի գործեր եք կատարել:

Զանգը տվեց: Ընկեր Արմիկը հավաքեց իր թղթապանակը և գնաց: Իսկույն աղմուկ բարձրացավ. երեխաները շրջապատեցին Գևորգին և սկսեցին վիճել:

— Նախ պետք է որոշենք, թե ում ենք օգնելու,— հանդիսավոր կերպով առաջարկեց Գևորգը:

— Որոշելու կարիք չկա, պարզ է, որ պետք է օգնենք Անահիտ տատիկին: Նրա տունը մեր դպրոցի կողքին է, նա բոլորովին մենակ է և աչքերն էլ լավ չեն տեսնում,— ասաց Թամարիկը:

— Ի՞նչ եք ասում,— հակառակեց Տիգրանը,— դա աշխարհի ամենաչար պառավն է:— Նա չի թողնում,

# ու իր ընկերները

Նկ. ՎԱՉԵ ԹԵՎԱՆՅԱՆԻ

նույնիսկ, որ ֆուտբոլ խաղանք իր տան մոտերքում:

— Լավ է անում, որ չի թողնում,— հանկարծ ասաց Շուշիկը:— Դուք միշտ աղմկում եք, իսկ նա գուցե այդ ժամին քնած է, չէ՞ որ նա ծեր կին է, գիշերները լավ չի քնում: Իսկ ֆուտբոլ խաղացողներդ, երբ ջարդում եք ապակիները, փախչում եք, և խեղճ տատիկն ինքն է ստիպված լինում ապակեգործ գտնել: Նա ձեր օգնության կարիքը չունի: Նրան օգնողներ կան, կարող եք չանհանգստանալ:

— Իսկ դու որտեղի՞ց գիտես,— հարցրեց երեխաներից մեկը:

— Գիտեմ: Ես ապրում եմ նրա տան կողքի մեծ շենքում:

— Հետո՞ ինչ: Մեզանից շատերն են այդ շենքում ապրում: Ոչ ոք ոչինչ չգիտե, բացի ամենագետ Շուշիկից,— նկատեց Թամարան:

— Իսկ ի՞նչ էիր կարծում: Ձեզանից և ոչ ոք չգիտե, որ Անահիտ տատիկի տղան Սովետական Միության հերոս է, իսկ ես գիտեմ,— ավելացրեց Շուշիկը:

— Իսկ տղան կենդանի՞ է,— հարցրին երեխաները զարմացած:

— Հենց բանն էլ այն է, որ կենդանի չէ: Նրա միակ տղան կռվել է Հայրենական պատերազմում:

Երեխաները լռեցին: Նրանք մտածում էին Շուշիկի պատմածի մասին:

— Շուշիկ, իսկ դու ճի՞շտ ասացիր, որ Անահիտ տատիկը մեր օգնության կարիքը չունի,— հարցրեց Գևորգը:

— Իհարկե:

— Որտեղի՞ց գիտես:





— Որովհետև ես և փոքր քույրս վաղուց նրան օգնում ենք:

Նորից դասարանում լռություն տիրեց: Բոլորը մտածում էին Շուշիկի մասին:

— Ճիշտ է, երեխանե՛ր: Ես մի քանի անգամ տեսել եմ, թե ինչպես Շուշիկը հաց, կաթ և կարտոֆիլ է տանում Անահիտ տատիկին,— ասաց Մարիամիկը:

— Հա՛, հա՛, հիշեցի: Ես էլ եմ տեսել, որ Շուշիկը մտնում է Անահիտ տատիկի տունը,— ասաց Կարենը:

— Իսկ ինչո՞ւ ընկեր Արմիկին ոչինչ չասացիր,— հարցրեց Շուշիկին Գևորգը:

— Որովհետև Թիմուրի և իր ընկերների մասին ես ոչինչ չեմ կարդացել,— միամտորեն խոստովանեց Շուշիկը:— Երբ ընկեր Արմիկն ասաց՝ բարձրացրեք ձեռքներդ, ես չբարձրացրի և նա տեսավ այդ:

— Բայց դու գիտեիր, չէ՞, թե ինչի մասին է այնտեղ գրված:

Շուշիկը թափահարեց գլուխը:

— Ո՛չ, ես չգիտեի, ես ուղղակի հասկացա, որ նրանք բարի են:

Երեխաներին ավելի զարմացրեց այն, որ Շուշիկը չի կարդացել այդ գիրքը: Նշանակում է, նա ինքն իրեն է որոշել օգնել Անահիտ տատիկին:

Այլևս չվիճեցին և ցրվեցին իրենց տները: Ուրեմն՝ լավ աղջիկ է Շուշիկը, թեև կռվարար է, զարմացած մտածում էին նրանք: Բայց ավելի զարմացան հաջորդ օրը, երբ առաջին կանչից հետո ընկեր Արմիկի հետ դասարան մտավ մի անծանոթ տղամարդ:

— Ես նրա ազգանունը չգիտեմ,— ասաց նա:— Գիտեմ միայն, որ նրան Շուշիկ են կանչում, որ գանգուր մազեր ունի, կապույտ աչիկներ և սովորում է այս դպրոցի հինգերորդ «ա» դասարանում: Գիտեմ նաև, որ այդ փոքրիկ աղջիկը լավ, բարի հոգի ունի:

— Ահա՛ Շուշիկը,— բղավեցին երեխաները քաշքշելով Շուշիկին:

— Ա՛յ, դա նա է, ես նրան ճանաչեցի,— ասաց ան-

ծանոթը՝ չհեռացնելով Շուշիկից իր ջոյող հայացքը և պատմեց...

— Ես ապրում եմ մենակ իմ ծեր մոր հետ: Հանկարծ շտապ անհրաժեշտ եղավ երկու շաբաթով գործուղման գնալ: Չէի կարող հրաժարվել, գործը պահանջում էր, թեև դժվար էր մենակ թողնել ծեր մորս: Ես գնացի գործուղման: Երկու օրից հետո մայրիկիս մոտ



է գալիս մի աղջիկ և հայտնում, որ եկել է իրեն օգնելու: Մորս հարցին, թե՝ ով է նրան ուղարկել, պատասխանում է, թե՝ ինքն իրեն է եկել:

Երբ ես վերադարձա տուն, տեսա այս գանգրահեր աղջկան: Նա ինձ տեսնելուն պես՝ դուրս փախավ: Իմ հարցին մայրս պատասխանեց, որ չի ճանաչում: Ինչպես մի բարի հոգի հայտնվել է և շատ օգնել մայրիկիս: Նա այլևս մեզ մոտ չեկավ:

Մի քանի օրից հետո, մեր բարեկամուհին՝ Անահիտ տատիկը, հյուր եկավ մեզ մոտ: Մենք պատմեցինք և նկարագրեցինք մեր բարերարի արտաքինը...

— Է՜, դա հո մեր Շուշի՜կն է,— բացականչեց նա,— և ինչպե՞ս է կարողացել գտնել ձեր տունը: Ես միայն նրան պատմեցի, որ մի ծեր բարեկամուհի ունեմ, որի տղան բացակայում է քաղաքից, որ ուզում եմ գնալ այցելության... բայց հիվանդացա... Անահիտ տատիկը ցույց տվեց ձեր դպրոցը, որտեղ սովորում է Շուշիկը: Ես եկել եմ, որ ամբողջ դասարանի առջև շնորհակալություն հայտնեմ նրան:

— Երեխանե՛ր, ճիշտ է, չէ՞, ինչ լավ օրինակ է վերցրել Շուշիկը թիմուրականներից:

— Նա այդ գիրքը չի կարդացել,— միաձայն ասացին երեխաները:

Այս դեպքից հետո դասարանը կոչեցին «Շուշիկն ու իր ընկերները»: Շատ բարի գործեր կատարեցին նրանք իրենց կապուտաչյա, գանգրահեր հրամանատարի ղեկավարությամբ:

# ԶՐՈՒՅՑ ՈՐԴՈՒՍ ՀԵՏ

ՄԱՄԻԿՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

*Նստել է տաքուկ սենյակում Վաչեն*
*Ու նկարում է սիրուն կակաչներ,*
*Նկարում է նա շուշաններ, վարդեր*
*Եվ ասում է.— Տե՛ս, գարուն է արդեն։—*
*Դրսում դեռ ցուրտ է ու ձյուն է անձայր,*
*Դեռ շատ հեռու են օրերը պայծառ,*
*Իսկ դու՛, իմ տղա՛, իմ լավ, իմ սիրուն,*
*Ինչքա՜ն հեշտությամբ գարուն ես բերում։*
*Բայց, գիտե՞ս, կանաչ, ծաղիկներ, մայիս,*
*Ինչքա՜ն դժվար են միշտ աշխարհ գալիս,*
*Գիտե՞ս, որ նրանց զարթոնքի համար*
*Կռիվ է լինում երկար ու համառ.*
*Արևն իր ոսկե սրերով անթիվ*
*Ձմռան զորքի դեմ ելնում է մարտի,*
*Քանդում է ճերմակ ամեն մի վրան,*
*Ձյունե, սառույցե կապանք ու զրահ,*
*Ու ձմեռն ահից փախչում է հեռու՝*
*Թողած արցունքի գետեր ու առու։*
*Իսկ ծիլ ու ծաղիկ, սառ հողում քնած,*
*Միշտ երազում են, որ նա շուտ գնա,*
*Եվ երբ զարթնում են, տեսնում են՝ կորավ,*



Նկ. ՌՈՒԲԵՆ ՄԱՆՈՒԿՅԱՆԻ

*Նոր միայն ձյունի հետքերով խոնավ*
*Ճամփա են գտնում ու աշխարհ գալիս,*
*Զարդարում գարնան օրերը գալիք։*

# ՋԵԹՈՅԻ ՓՁՈՅՆԵՐԸ

ԿՈՐՅՈՒՆ ՀԱԿՈԲՅԱՆ

Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ

Կնունքի ժամանակ թե ինչու էին նրան Ջեթո կոչել, հայտնի չէ:

Այո, հենց այդպես, Ջեթո էլ անվանում էին: Որքան էլ փորձում էին պարզել պատճառը, ոչինչ դուրս չեկավ:

Ուզում էին Սեդրակ կամ Սեթո կոչել, բողոքում էր.

— Եղբա՛յր, ի՞նչ եք քար ու չոլ ընկնում, ուզում եք ուրիշի անունը շալակս հանե՞ք: Ես էն գլխից էս գլուխ Ջեթո եմ որ կամ, Ջեթո էլ սաեք: Համ էլ մի բան իմացեք, որ իմ անունը պատմական է, շատ հեռվից է գալիս: Դուք դեռ շատ հաց ու պանիր պիտի ուտեք, որ այդքանը հասկանաք:

Ջեթոն այն մարդկանցից էր, որոնք կյանքում շատ քիչ բան արած լինելով, կարծում են, թե ամեն գործով զբաղվել են, ամեն ինչ գիտեն, շատ բան են տեսել, շատ բան հասկացել:

Եթե մեկն ասեր՝ անտառում արջի հանդիպեցի ու գլուխս մի կերպ ազատեցի նրա ճանկից, Ջեթոն անմիջապես կարձագանքեր ու կարծես վաղուց կատարված մի իրողություն, կպատմեր, հետո էլ այնպիսի մարդկանց մասին, որոնք վաղուց մեռել են և չեն կարող վկա դառնալ:

Ջեթոյի այս բնավորությունը բոլորին հայտնի էր: Մարդիկ, երբ նկատում էին, որ Ջեթոն գալիս է, ընդհատում էին զրույցի նյութը և այնպիսի մի բան մեջ բերում, որ նրան ասպարեզ հանեն.

— Ա՛յ ձեր տունը շինվի, բա չե՞ք լսել, էն անտեր արջը խեղճ Մաթևոսին ի՞նչ օրն է գցել,— երբ Ջեթոն տեղ հասավ, ասաց նրա հասակակից Մուքել ամին:

Ջեթոն դեպքի մանրամասնությամբ հետաքրքրվող չէր: Այդքանն իմանալով, անմիջապես վրա բերեց.

— Վա՛յ, Մաթևո՛ս, քո տունը շինվի հա՜, բա արջն ի՞նչ է, որ մարդը նրա առաջ խեղճանա: Դե հիմա ակա՛նջ արեք: Վաղուց էր, նոր 17–18 տարեկան տղա էի, հայրս ասաց՝ լծկանը սարը տար: Այսօրվա պես հիշում եմ, ես էի, լույս դառածներ Թաղձանց Մուկուչն էր, Ափնանց Կարոն, Եղնանց Փարեմուզը, եզներս առաջներս արինք ու գնում ենք սարը: Ձոր գյոլերն անցանք ու դեմ տվինք Թեղուտի դոշին: Ջահել տղաներ, արյուններս եռ է գալիս, հարայհրոցով, ձայներս անտառը գցած՝ վեր ենք բարձրանում: Մեկ էլ, ը՜հը՛, ձեր տերը չմեռնի, դիմացի մոշուտից երեք անտեր-անտիրական արջեր դեմներս ելան, ամեն մեկը էշից էլ ջանով: Մեր տղաների թուքը ցամաքեց, սարի դոշից իրենց ներքև գցեցին: Մնացինք ես ու այդ երեք ջանավարները: Անտերներն ինձ կալմեջ արին: Դե ես էլ խոմ մեջքիս վրա չպիտի՛ պառկեի, համեցե՛ք, պարոն արջեր, սոված կլինեք, ինձ կերե՛ք, գուցե մի օր էլ դուք իմ լավության տակից դուրս կգաք: Գրպանումս արթիկցի Գրիգորի շինած մի դանակ ունեի, հիշեցի, հանել ու ամենամեծ արջի փորը ճղելը մեկ արի, սա գոռաց ու ոտքերիս տակ փռվեց:

Մնացինք ես ու երկուսը:

Այս կողմ ենք պտտվում, այն կողմն ենք պտըտվում, չէ՜, սամթը գցեցի ու մեկին էլ գետնովը տվի: Մնացած մի անտերը մոլորվեց, ոչ այն է՝ ուզում է օձիքս բաց թողնի, ոչ այն է՝ վրա պրծնի:

Անմիջապես խելքս գլուխս հավաքեցի. «Ամոթ չի՞ քեզ, Ջեթո՛, երեքն էին, երկուսին ռադ արիր, այս մեկն ի՞նչ է, որ առաջին խեղճացել ես»: Վրա պրծա, ոնց որ հավը ձեզ օրինակ, իշաչափ արջին ծնկիս տակ դրի, կոկորդին այնքան հուպ տվի, որ աչքերը կանգնեցին, տեսա, որ դողացրեց, ոտքերը ձգեց, նոր բաց թողի: Կողքին նստեցի, որ քրտինքս չորանա:

Նստել եմ ու մտածում եմ. «Բա որ հանկարծ սրանց ընկերները հանդիպած լինեն մեր տղանե-





րին ու կերած, ես նրանց ծնողներին ի՞նչ պատասխան պիտի տամ»: Այդ մտքերով ես ինձ տանջում էի, մեկ էլ տեսնեմ՝ մեր տղաները Թեղուտի դոշին շղթա կազմած գալիս են: Երեքն էլ ողջ ու առողջ տեղ հասան: Նոր շունչս տեղն ընկավ: Վրա պրծա դրանց. «Տո՛ անամոթ այսպես ու այնպեսներ, թողիք փախաք, այդ դեռ ոչինչ, բա որ ձեզ մի բան պատահեր, ես որի՞դ հոր ձեռքից կըպրծնեի»: Տղաները մեղա եկան:



Դե ես էլ ի՞նչ պիտի անեի, ներեցի: Եզներն առաջ արինք ու հասանք սարը:

Ջեթո՛ բիձա, բա այդքան արջի միսը, մորթիներն ի՞նչ արիք, էդ հո ահագին հարստություն էր,— դեսից-դենից հարցրին երիտասարդները:

— Բեզարած, ջարդված հասանք սարը: Մինչև մի քիչ շունչ առանք, օրն անցավ: Արևը մայր մտնելու մոտերքը սարքով-սուրքով իջանք արջատեղը, որ քերթենք, միսն ու մորթիները տանենք: Տեսանք ինչ, ամառվա շոգ ու կրակ օր, երեքն էլ նեխել են, փչացել, բանից պրծել,— անմիջապես հորինեց Ջեթոն:

Զարմանալի է, թե ինչպես էլ գլխի ընկավ, որ եթե միսն ու մորթիները գյուղ բերեր, վկաների թիվը կմեծանար: Մենակ ինքը կարո՞ղ էր, արդյոք, այդքան միսն ուտել ու մորթիներն էլ պարտակել: Ա՛յ, թե որքան խորամանկ վարվեց Ջեթոն:

Մի քանի օր հետո գյուղամիջում հավաքված ծերունիները զրուցում էին: Մեկն իր երիտասարդ ժամանակից մի դեպք էր պատմում, մյուսը՝ անցած պատերազմում իր կրած նեղություններից, և այսպես, ով ինչ հիշում էր:

Հենց այդ ժամանակ, իր պատմական չիբուխը ֆըստացնելով, մի փոքր էլ կաղին տալով, խմբի մեջ մտավ Ջեթո բիձան:

Առաքել ապին, որ գյուղում հայտնի էր որպես կատակասեր ու բանիմաց մարդ, սիրում էր մի բան մեջ գցել, ծաղր պակաս մարդկանց հոգու հետ խաղալ:

Ջեթո բիձան դեռ նոր էր դիմացի պատից մի քար բերել, հարմարեցրել ու նստել, երբ լսեց Առաքել ապիի դժգոհությունը.

— Ա՛յ ժողովուրդ, բա մենք էլ մա՞րդ ենք, պիտի ասենք կյա՞նք տեսանք, կյանքից բա՞ն հասկացանք: Վաղը մյուս օրը պիտի մեռնենք: Գյուղից բացի ի՞նչ ենք տեսել: Ասում են, մեր քաղաքն ամեն տեսակ գազան են բերել: Քաղաքից տամս են վերցնում գնում գազանանոց, արջ, վագր, առյուծ, փիղ, կոկորդիլոս, բորենի, վիշապ օձեր, կապիկներ ու հազար տեսակ բաներ տեսնում: Ես այս տարիքի մարդ եմ, գայլից բացի ուրիշ գազան տեսած չեմ:

Ջեթո բիձան վախենալով, որ մի ուրիշըն իրենից շուտ կարող է արձագանքել, շտապով չիբուխը բերանից հանեց, մի քիչ թեքվեց դեպի Առաքել ապին ու.

Ճիշտ է ասում Առաքելը: Ինչի՞ ենք պետք: Ա՛յ, օրինակ, չե՛կ Օվագ, դու՛ ասա, գիտե՞ս քաղաքի ճանապարհը որ կողմն է: Գնացք, տրամվայ տեսա՞ծ ես: Ջնեղանաս, Օվա՛գ ջան, ես էլ քեզանից լավ օրի չեմ: Արդեն յոթանասունս անցել է, մինչև հիմա շնից բացի ուրիշ գազան տեսած չեմ,— ասաց և, աջ ու ձախ նայելուց հետո, չիբուխը բերանը տարավ:

Այս որ լսեց Առաքել ապին, դիմացը նստած մի երկուսին աչքով արեց, մորթե փափախը գլխից իջեցնելով ծնկանը դըրեց ու դառնալով դեպի նախորդ խոսողն, ասաց.

— Ա՛յ դու խաշած լոբի ցանող Ջեթո, բա էն դու չէի՞ր, որ 17–18 տարեկան բամանակ Թեղուտի դոշի մոշուտում երեք արջ սպանեցիր, հիմա էլ ասում ես, թե կյանքումդ շնից բացի ուրիշ գազան տեսած չես:

— Տու՜նդ շինվի, Առաքե՛լ, դու էլ կասես, թե Ջեթոյի սուտը բռնեցիր: Ա՛յ մարդ, բա ջահել ժամանակվա սպանած արջը գազա՞ն է: Դա որ գազան է, ուրեմն Զանգեզուրի ծմակներում սպանածս վագրին էլ պիտի վրաս գազան հաշվե՞ս,— ծերունիների բարձրաձայն ծիծաղի տակ ավարտեց խոսքը Ջեթոն:



# ԻՆՉՈ՞Ւ Է ՄԱՐԳԱՐԻՆԸ ՍՊԻՏԱԿ

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

Պիոներական սենյակում հավաքված երեխաները պատի թերթ էին ձևավորում: Նրանց օգնում, խորհուրդներ էր տալիս դպրոցի ավագ ջոկատավարը՝ ընկեր Ռոզան: Հանկարծ սենյակի դուռը բացվեց ու երևաց 9-րդ դասարանցի Աբրահամ Աբրահամյանը: Նա կոմիկական մի շարժում արեց, ապա հարցրեց հավաքվածներին.

— Ինչո՞ւ է աքլորը ծուղրուղու կանչելիս՝ աչքերը փակում...

Բոլորը նրա անսպասելի հարցից զարմացած՝ չգիտեին ինչ պատասխանեն... Աբրահամի տրամադրությունը բարձր էր:

— Որովհետև նա նոտաները անգիր գիտի,— իր հարցին պատասխանեց Աբրահամն ու նորից դիմեց ավագ ջոկատավարին.

— Ընկեր Ռոզա, եկեք դպրոցում ուրախների և հնարամիտների ակումբ կազմակերպենք:

Ջոկատավարը մի րոպե մտածեց, ապա գլխով հավանության նշան արեց:

Ու շուտով պիոներ սենյակ հավաքվեցին դպրոցի սրամիտ երեխաները: Դա երկու տարի առաջ էր: Եվ Աշոտ Ղազարյանը կոչվեց թիմի լուրջ անդամ, Ջավեն Հարությունյանը ամենածանր քաշի գիտունիկ, Լարիսա Յաբլոկյանը՝ «Մոծակ» թերթի խմբագիր, Օմար Միրաքյանը՝ «Ոզնի» թերթի խմբագիր, Լևոն Հայրապետյանը՝ աչք հարձակվող սրամիտ, Սահակ Օրդյանը՝ թիմի համեստ անդամ, իսկ թիմի ավագ դարձավ Աբրահամ Աբրահամյանը:

Ուրախների և հնարամիտների ակումբը ունեցավ իր նշանաբանը՝

Սիրտդ տուր, հոգիդ,
Բայց մրցույթը
Տանուլ մի՛ տուր...

Թիմը ունեցավ իր անունը՝ «Արաքս»:

Ամեն օր դասերից հետո հնարամիտները հավաքվում էին պիոներական սենյակում և փորձում իրենց հնարամտությունն ու սրամտությունը, պատրաստվում մրցության: Ամեն օր նորանոր սրամտություններ էին ծնվում:

— Որքա՞ն են ապրում մկները,— հարցնում էր Աշոտը:

— Դա կախված է կատվի ախորժակից,— պատասխանում էր սրամիտներից մեկը, և իրար հաջորդում էին զվարճալի հարց ու պատասխանները:

Ակումբի անդամներին շատ էին օգնում դպրոցի հայոց լեզվի և գրականության ուսուցիչ ընկեր Ազիզյանը, հայկական հեռուստատեսության ստուդիայի մանկա-պատանեկան հաղորդումների խմբագրության ռեժիսոր Ռ. Սարգսյանը:

Եվ ահա եկավ ամենաուրախալի օրը: Երևանի Ե. Չարենցի անվան դպրոցի ուրախների և հնարամիտների «Արաքս» ակումբի անդամները պետք է մրցեին Կրուպսկայայի անվան դպրոցի «Մուսա» ակումբի անդամների հետ: Մրցությունը հաղորդվեց հեռուստատեսությամբ: Այդ հաղորդումը, իհարկե, դիտեցին հազարավոր հեռուստադիտողներ, որոնք անշուշտ դեռ հիշում են արաքսցիների սրամիտ հարցերը և պատասխանները:

Ահա Աբրահամը հարցնում է մուսացիներին.

— Ինչո՞ւ է մարգարինը սպիտակ:

Լռություն, սպասում, և նորից լսվում է Աբրահամի ձայնը.

— Վախից գույնը գցել է, հանկարծ իրեն կարագի տեղ չվաճառե՞ն...

Լսվում է կողմնակիցների ուրախ ծիծաղը: Ու «Արաքսը» շահում է գավաթը:



«Արաքսի» անդամների մեծ մասը արդեն ավարտել է դպրոցը, սովորում է ինստիտուտներում, աշխատում: Սակայն դպրոցում նորից լսում է ուրախների և սրամիտների խոսքը: Նորից մրցություններ են կազմակերպվում: Դրանք արաքսցիների հաջորդներն են՝ Վիգեն Ազրոյանը, Սուսաննա Չալաբյանը, Արմեն Հարությունյանը, Գայանե Գրիգորյանը, որոնք իրենց թիմը կոչել են «Անի»:

Հնարամիտների այս նոր թիմը էլ մեծ հաջողությունների է հասել: Նրանք արդեն մրցել են Երևանի Խ. Աբովյանի անվան դպրոցի «Էրեբունի» ակումբի թիմի հետ և արժանացել հեռուստադիտողների ուշադրությանը: Այս մրցության ժամանակ ուրախների և հնարամիտների ակումբի անդամների նպատակը Էրեբունի-Երևանի մասին ավելի շատ տեղեկություններ իմանալն էր: Մրցությունն էլ հենց նվիրված էր Երևանի 2750-ամյակին:

Ուրախների և հնարամիտների թիմեր կազմակերպելը Չարենցի անվան դպրոցի երեխաների համար դարձել է ազատ ժամերը հետաքրքիր անցկացնելու կարևոր միջոց: Դրա համար էլ հաճախ են անցկացվում միջդասարանական մրցություններ, որոնց ժամանակ հայտնի են դառնում ամենասրամիտ երեխաները:

Ու դասամիջոցներին անգամ, երբ որևէ անկյունում հավաքվում են սրամիտների թիմերի անդամները, հանկարծ բռնկվում է ուրախ ծիծաղը: Ուրեմն նրանցից մեկը «նոր» սուր հարց է տվել մեկին, թեկուզ՝ «ինչո՞վ է տարբերվում ճուկը մկից»:

Ու լսվել է նաև պատասխանը.

— Նրանով, որ ճուկը ուղղական հոլով է, մկից՝ բացառական...

Լ. ՍԱՐԳՍՅԱՆ

# ԳՈՐԻՍԻ ՊԻՈՆԵՐ ՏՈՒՆԸ

Գորիսում Կարապետյանի և Հակոբ Կամարի փողոցների խաչմերուկի վրա է գտնվում պիոներ տունը: Մաշված փայտե աստիճանները մեզ տանում են պիոներ տան սենյակները, որոնք թեև փոքր են ու քիչ լուսավոր, բայց չէ՞ որ պիոներ-դպրոցականների համար այդ տունը այն միակ հավաքատեղին է, որ հանդիպում են նրանք, աշխատում, ստեղծագործում, նախաձեռնում պիոներական այս կամ այն աշխատանքները: Այստեղ տեղի են ունենում «Ալիք», «Խարույկ» ակումբների պարապմունքները, հետաքրքիր և ուսուցողական թեմաներով զրույցներ են անցկացնում:

Պիոներները Գորիսի շրջանի տասնվեց գյուղերին նվիրված ալբոմներ են կազմել: Նրանք գրի են առնում այդ գյուղերի անցյալն ու այսօրը:

Ընդարձակ սրահի մի անկյունում փռվում է օջախը: Կրակի վրա պղնձե կաթսան է, կողքին՝ ձեռնափայտը ձեռքին ազգային տարազով մի գեղջուկ:

Մյուս կողմում՝ Նոր Գորիսն է իր բազմահարկ, տուֆաքար շենքերով, լայնանիստ պողոտաներով, դպրոցներով և վերջապես Գրիգոր Տաթևացու անվան ֆիզիկայի և մաթեմատիկայի ֆակուլտետով...

Պիոներ տունը, որն ընդամենը երկու սենյակ ունի, չի գոհացնում շրջանի հազարավոր երեխաների աճող պահանջը: Այդ սենյակների պատերն էլ չեն բավականացնում պիոներներին՝ ցուցադրելու իրենց համագյուղացի նշանավոր գրողներին ու արվեստագետներին, ազատագրական պայքարի ու Հայրենական պատերազմի հերոսներին, գիտնականներին ու բժիշկներին, տեղի նշանավոր մարդկանց:

Ինչպես ամեն տարի, այս տարի էլ մայիսին Գորիսի պիոներ-դպրոցականները հանդիսավոր կերպով նշեցին իրենց «Երաժշտական գարունը»: Ցնծություն էր Գորիսում: Հրապարակ են մտնում դպրոցականները: Յուրաքանչյուր գյուղի դպրոցի պիոներական դրուժինան ցուցադրում է իրենց գյուղի համար ամենաբնութագրականը, անցնում են շքանշանակիր հովիվներ, առաջավոր կթվորուհիներ, հանքափորներ:

Գորիսի պիոներ տունը, որն իր ներքին ու արտաքին տեսքով հեռու է պիոներների համար իդեալական, հարմարավետ տուն լինելուց՝ միշտ էլ աշխատանքային եռուզեռի մեջ է:

Այսօր էլ Գորիսի պիոներները հպարտանում են, որ պիոներական աշխատանքների կազմակերպման տեսակետից, չորրորդ տարին է՝ Գորիսը գրավում է առաջին տեղը:

Հազարավոր պիոներ-դպրոցականներ անհամբեր սպասում են այն օրվան, երբ հանրապետական օրգանները կկատարեն իրենց խոստումը՝ Գորիսի պիոներ պալատի նախագիծը չեն թողնի այսպես ընկած վիճակում և կանգնեն գործի: Ահա թե ինչու Գորիսի պիոներները խնդրել են «Պիոներ» ամսագրի խմբագրությանը, ահազանգելու այդ մասին:

ՄԵՏԱՔՍ




# Կ Ե Չ Ա Ռ Ի Ս

Կեչառիսը ոչ միայն նշանավոր գյուղ էր, այլև հայտնի մենաստան ու պանծալի դաստակերտներից մեկը Պահլավունյաց տոհմի, որը միջնադարում մեծ դեր է խաղացել թե՛ Այրարատյան աշխարհում և թե՛ հետո՝ Կիլիկիայում։ Պահլավունիները, ինչպես Անիի և Շիրակի մեջ, այնպես էլ այս գավառում կառուցեցին եկեղեցիներ և այլ կոթողներ։ Ներկայումս Ծաղկաձորում պահպանված կոթողներից են Գրիգոր Լուսավորիչը, Կաթողիկեն, ս. Նշանը և ս. Հարությունը։

Կեչառիսի հիմնադիրն էր Ապիրատ իշխանը։ Գլխավոր եկեղեցին՝ Գրիգոր Լուսավորիչը, որն իր ճարտարապետությամբ հրապուրում է բոլորին, կառուցեց Գրիգոր Մագիստրոսը 1033 թվականին կամ ըստ Ալիշանի՝ 1003։ Եկեղեցին ամբողջապես կանգուն էր մինչև 1827 թվականը։ Բայց երկրաշարժի հետևանքով կործանվեց նրա բարձր և գեղեցիկ գմբեթը։

Այս բնակավայրը (ներկա Ծաղկաձորը) հետագայում Ջանջլու է կոչվել ոչ հեռու գտնվող Փամբակի լեռնաշղթայի միջին մասից դեպի հարավ-արևելք ձգվող Ջանջլու լեռների անունով։

Ծաղկաձորին Կոստանտինովկա անունը տրվեց 19-րդ դարի սկզբից, երբ այստեղ բնակություն հաստատեցին ռուս մալականները և գյուղն անվանեցին Կոստանտինովկա։ Բայց ժողովուրդը շարունակեց Դարաչիչակ կոչել։

Ծաղկաձորը գտնվում է Երևանից 52 կիլոմետր հեռավորության վրա։ Ծաղկաձորի հիասքանչ բնությունը նրան շատ վաղուց ամառանոցային վայր է դարձրել։

1925 թվականից, երբ այստեղ սկսվեցին պիոներական ճամբարներ և հանգստյան տներ ստեղծվել, բազմաթիվ նոր շենքեր կառուցվեցին։

Ծաղկաձորի դիրքը շատ գրավիչ է, բնությունը՝ գեղատեսիլ։ Նա ընկած է Ծաղկունյաց լեռների գոգավորություններից մեկում՝ Թեղենիս լեռան կանաչազարդ լանջերին, ծովի մակերևույթից



1 710 մետր բարձրության վրա։ Այլ խոսքով, նա Երևանից բարձր է 710 մետրով։ Ծաղկաձորի բնության զարդն են նրա անտառները, որոնց ընդհանուր տարածությունը հավասար է հինգ հազար հեկտարի։ Իշխող ծառերի տեսակներից են կաղնին, թխկենին, կեչին, կան նաև սոճու պուրակներ։ Անտառներում աճում են վայրի խնձորենի և տանձենի։ Ծաղկաձորը շրջապատող անտառները, ծաղկազարդ լանջերը յուրատեսակ բուրմունքով են հագեցնում օդը, որը միշտ զով է և կազդուրիչ։ Պատահական չէ, որ նա դարձել է Հայաստանի ամառանոցային վայրերից մեկը։

Հանգստացողների սիրած վայրերից են նաև Ծաղկաձորի աղբյուրները։ Այնտեղ հանգստացողները լավ գիտեն Ցանձաղբյուրը, Կաթնաղբյուրը, Արջաղբյուրը և Թթու ջուրը։ Վերջինս պատկանում է հանքային ջրերի շարքին։

Ծաղկաձորից գեղեցիկ տեսարան է բացվում դեպի Սևանի ավազանը, հորիզոնի վրա է Ջրառատ գյուղը։ Իսկ եթե դուք փորձեք բարձրանալ Թեղենիսի գագաթը, ապա է՛լ ավելի կմեծանա այդ հիասքանչ հորիզոնը և ձեր առաջ կբացվի պատմական Գեղարքունյաց Ծովազարդ գավառը, որի կենտրոնում է գեղատեսիլ Սևանա լիճը։

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ*
*Աշխարհագրագետ*

## ԶԱՐՄԱՆԱԼԻ ՋՐԱՍՈՒԶԱԿԸ



Ինչպե՞ս է կոկորդիլոսը ժամերով դիմանում ջրի տակ. մի՞թե նրա թոքերը թթվածնի այդքան պաշար են տեղավորում։ Այս հանելուկը վաղուց է զբաղեցնում հետազոտողներին։ Եվ ահա այժմ պարզվել է, որ ջրում երկար մնալիս, երբ սպառվում է թթվածնի պաշարը, կոկորդիլոսի օրգանիզմում սկսում են գործել յուրատեսակ կենսակարգավորիչներ, որոնք փակում են թթվածնի մուտքը դեպի բոլոր օրգաններն ու հյուսվածքները, բացի սրտից և ուղեղից։ Որոշ ժամանակ անց, կարող է ընդհատվել օդի մատակարարումը նաև սրտին, և ռիթմը կընդանդաղի, հասնելով մեկ րոպեում մեկ զարկի։ Միայն ուղեղն է շարունակում բավարար չափով թթվածին ստանալ։



## ԿԼԻՄԱՅԻ ՔՄԱՅՔՆԵՐԸ

*Ըստ պատմական տեղեկությունների, 1485 թվականին Ռուսական պետությունում (ներկայիս Մոսկվայի մարզում) հունվարին և փետրվարին ծառերը ծաղկել են, բայց մարտին խիստ ցրտեր են արել և բոլոր այգիները ցրտահարվել ոչնչացել են։*

*1634 թվականին Գերմանիայում հուլիսի վերջին ձյուն է տեղացել, իսկ 1466 թ. Մոսկվայի շրջակայքում մայիսի վերջին և հունիսի սկզբին ձյունը երկու օր չի հալվել։*

*401, 1011 և 1620 թվականներին Սև ծովը ամբողջությամբ սառել է։*

*1011 թվականին սառցակալում է նկատվել նույնիսկ Նեղոսի ստորին հոսանքում, իսկ 1620 թ. Միջերկրական ծովը Ճենովայի մոտ սառցակալել է։*



## ՕՁԻ ԱԿՆՈՑՆԵՐԸ

Օձերը կրում են յուրօրինակ ակնոցներ, որոնք կյանքում բազմիցս փոխում են։ Օձի աչքերը չեն ծածկված շարժվող կոպերով, ինչպես շատ կենդանիների մոտ. յուրաքանչյուր աչքի վրա կա թափանցիկ կոպ, որը ամրացված է ակնախոռոչի եզրին, ինչպես ակնոցի շրջանակին ամրացված ապակին։

Կաշին փոխելուց առաջ այդ «ակնոցները» աղոտանում են, և օձի տեսողությունը թուլանում է, իսկ կաշին փոխելու ժամանակ օձը իր ամբողջ մաշկի հետ հանում է նաև այդ «ակնոցները»։ Աճում են նոր կոպեր՝ միանգամայն մաքուր և թափանցիկ։



## ԼԵԳԵ՞ՆԴ ՁՅԱ՞Ն ՓԱԹԻԼԻ ՄԱՍԻ՞Ն

*Գրեթե ցանկացած գիտա-հանրամատչելի գրքում կամ հոդվածում, որտեղ խոսվում է ձյան մասին, դուք, հավանաբար, հանդիպել եք այսպիսի մտքի. ձյան փաթիլների գեղեցկությունն այնքան բազմազան է, որ անհնարին է գտնել երկու միանման գծագրություն ունեցող փաթիլ։*

*Բայց արդյո՞ք այդ այդպես է և ի՞նչպես են այն ստուգել։ Հաշվումները ցույց են տալիս, որ մեկ քառ. կմ. մակերեսի վրա ձյան նույնիսկ ոչ հաստ՝ տասը սանտիմետրանոց շերտը իր մեջ պարունակում է ավելի քան 300 միլիարդ փաթիլ։ Իսկ ձմռանը մեր մոլորակի վրա սպիտակ սավանի տակ է մնում 100 միլիոն քառ. կմ. տարածություն, երկրագնդի մակերեսի գրեթե մեկ քառորդը, և մեծ մասամբ էլ ձյան շերտի հաստությունը գերազանցում է տասը սանտիմետրից։*

*Եվ այսպես տարեց տարի, միլիոնավոր դարեր շարունակ, սկսած այն ժամանակից, երբ մեր մոլորակն այնքան էր սառել, որ տեղումները նրա վրա կարող էին թափվել ձյան ձևով։ Թող որևէ մեկը փորձի, բազմապատկելով այս թվերը, ասել ձյան փաթիլների քանակը, որոնք երբևիցե լույս աշխարհ են եկել։*

*Իհարկե, ոչ ոք և երբեք չի կարող դրանք լուսանկարել և համեմատել։ Բայց և թեորեապես, մաթեմատիկորեն անհնար է, որ այդքան մեծ քանակության դեպքում գոնե երկու փաթիլ նման չլինեն իրար։*

# ԻՆՉՊԵՍ ԵՆ ՓՂԵՐ ՈՐՍՈՒՄ

*Փղերին ողջ-ողջ որսալը հեշտ բան չէ։*

*Փղորսության սովորական ձևն այն է, որ փղերի երամակը քշելով բերում են նախապես կառուցված փարախը և այդպես բռնում։ Բայց դա և՛ թանկ է նստում, և՛ վտանգավոր է։ Մանավանդ, եթե պետք է բռնել միայն մեկին։*

*Ժամանակակից տեխնիկան ու քիմիան հնարավորություն են ընձեռնում այդ դժվարին գործը գլուխ բերել հեշտ ու հասարակ ձևով։ Որսորդները նստում են ուղղաթիռ, վերևից որոնում գտնում են մի երամակ, որ բաց տեղում լինի, իջնում են մինչև 25-30 մետր բարձրության վրա և նետահարում ցանկացած փղին։ Բայց նետի փոխարեն փղի մարմնի մեջ է խրվում շպրիցը, որ լցված է կենդանուն անշարժացնող 3 միլլիլիտր նյութով։ Փիղն ընկնում է, և երամակը, ոչպես օրենք, վախից փախչում է։ Ընկած փղին կապում են և երակից ներարկում հակաթույն՝ անտիդոտ։ Մի քանի րոպե հետո կենդանին ուշքի է գալիս։*



## ԴԱՐԵՐԻ ԽՈՐՔԻՑ

*Մարդու կողմից աճեցված ամենահին հացազգի բույսը վերագրվում է մեր թվարկությունից առաջ 6750 թվականին։ Ամենահին ընտանի կենդանին շունն է (մեր թվարկությունից մոտ 18 հազար տարի առաջ)։ Ոչխարը սկսել են ընտելացնել մեր թվարկությունից առաջ 8-րդ դարում, այծը՝ 6-րդ դարում, խոշոր եղջերավոր անասունը՝ 5-րդ դարում։*

* * *

*Երկրի կեղևում ամենատարածված մետաղը ալյումինումն է։ Երկրի ընդերքում այն կազմում է 8 տոկոս, այն դեպքում, երբ ոսկին կազմում է ընդամենը հինգ միլիոներորդական տոկոս։ Սակայն մարդիկ երկար ժամանակ չգիտեին ալյումինումի մասին. առաջին անգամ նրա ձուլակտորը ստացել են Ֆրանսիայում, 1885 թվականին և այն ժամանակ դա թանկարժեք մետաղ էր համարվում։*


Լույս է տեսնում 1923 թվականից

ՊԻՈՆԵՐ

№ 1 Հունվար 1969 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



*Շապիկի առաջին էջը՝*
*լուսանկար ՎԱԶԳԵՆ ՂԱՍԱԲՅԱՆԻ*

Գլխավոր խմբագիր՝ ՍԱՂ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԲԱՐԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԽԱՆՋՅԱՆ Գր., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՄԵԼԻՔՅԱՆ Ս., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍԻՄՈՆՅԱՆ Կ. (գլխ. խմբագրի տեղակալ), ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղարվեստական խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.։

**„Пионер"** на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Кармир банаки, № 41.

*Հասցեն՝ Երևան, Կարմիր բանակի փողոց, № 41, հեռախոսներ՝ 36–32–72, 2–68–16, 36–14–96։*

ՎՖ 06712։ Պատվեր՝ 1671։ Տպաքանակ՝ 2800։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 20/I. 1969 թ.։ ՀՍՍՀ Մինիստրների սովետի մամուլի պետական կոմիտեի պոլիգրաֆարդյունաբերության գլխավոր վարչության Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ։ Երևան, Տերյան փ. № 91։ Գինը՝ 10 կ.



## Ո՞Վ Է ԲԵՐԵԼ ՆՈՐ ՏԱՐԻՆ

ՊԱՏՎԱԿԱՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ

Քամին ասաց մանուկներին.
— Ե[illegible]մ բերել ձեր Նոր տարին.
Շրջել եմ ես երկինքը բաց,
Տարին առել ու իջել ցած։—
Ձմեռը, թե.—Ձե՞ս ամաչում,
Ե՛ս եմ բերել, ի՞նչ ես փչում։—
Ժամացույցը լսեց, լսեց
Ու նրանց հետ այսպես խոսեց.
— Զուր եք, ախր, իրար խաբում,
Ժամանակը ե՛ս եմ չափում,
Չափում եմ ես իմ թվերով,
Իմ ճշտապահ զույգ թևերով,
Չափում երգով՝ թիկ-թա՛կ, թիկ-թա՛կ,
Միշտ բարեխիղճ ու միշտ հստակ։
Եվ ե՛ս եմ, որ այս աշխարհում
Հանդիպում եմ միշտ Նոր տարուն,
Առնում եմ իմ մեծ սլաքին
Ու բերում ճի՛շտ ժամանակին։

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

10 կ.
Ինդեքս 77806